Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 3 1949

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—02—87։

## ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

### ԱՄԵՐԻԿՅԱՆ «ԻՆՏԵՐՆԵՅՇՆԼ ՆՅՈՒԶ ՍԸՐՎԻՍ» ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅԱՆ ԵՎՐՈՊԱԿԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԴԻՐԵԿՏՈՐ Պ-Ն ԿԻՆԳՍԲԵՐԻ ՍՄԻՏԻՑ 1949 ԹՎԻ ՀՈՒՆՎԱՐԻ 27-ԻՆ ՍՏԱՑՎԱԾ ՀԱՐՑԵՐԻՆ

*ԱՌԱՋԻՆ ՀԱՐՑ։ Արդյոք ՍՍՌՄ Կառավարությունը պատրաստ կլինի՞ Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարության հետ միասին քննարկել այնպիսի դեկլարացիա հրապարակելու հարցը, որը հաստատեր, թե ոչ մեկ, ոչ էլ մյուս կառավարությունը մտադրություն չունեն միմյանց դեմ պատերազմի դիմելու։*

*ՊԱՏԱՍԽԱՆ։ Սովետական Կառավարությունը պատրաստ կլիներ քննարկել այդպիսի դեկլարացիա հրապարակելու հարցը։*

*ԵՐԿՐՈՐԴ ՀԱՐՑ։ Արդյոք ՍՍՌՄ Կառավարությունը պատրաստ կլինի՞ Ամերիկայի Միացյալ Նահանգների Կառավարության հետ միասին կիրառել այդ խաղաղության Պակտի իրագործման ուղղությամբ այնպիսի միջոցառումներ, ինչպես աստիճանական զինաթափումն է։*

ՊԱՏԱՍԽԱՆ։ Իհարկե, ՍՍՌՄ Կառավարությունը կկարողանար համագործակցել Ամերիկայի Միացյալ Նահանգների Կառավարության հետ այնպիսի միջոցառումներ կիրառելու գործում, որոնց նպատակն է իրագործել Խաղաղության Պակտը և որոնք տանում են դեպի աստիճանական զինաթափում։

ԵՐՐՈՐԴ ՀԱՐՑ։ Եթե Ամերիկայի Միացյալ Նահանգների, Միացյալ Թագավորության և Ֆրանսիայի կառավարությունները համաձայնվեն արևմտա-գերմանական սեպարատ պետություն ստեղծելը հետաձգել մինչև ամբողջությամբ վերցրած գերմանական պրոբլեմի քննարկմանը նվիրված Արտաքին Գործերի Մինիստրների Խորհրդի սեսիայի հրավիրումը, արդյոք ՍՍՌՄ Կառավարությունը պատրաստ կլինի՞ վերացնել այն սահմանափակումները, որ սովետական իշխանությունները մտցրել են Բեռլինի և Գերմանիայի արևմտյան գոտիների միջև եղած կոմունիկացիաների նկատմամբ։

ՊԱՏԱՍԽԱՆ։ Այն դեպքում, եթե Ամերիկայի Միացյալ Նահանգները, Մեծ Բրիտանիան և Ֆրանսիան պահպանեն երրորդ հարցում շարադրված պայմանները, Սովետական կառավարությունը արգելք չի տեսնում տրանսպորտային սահմանափակումները վերաց-



նելու համար, սակայն պայմանով, որ միաժամանակ վերացվեն նաև երեք տերությունների կողմից մտցված տրանսպորտային ու առևտրական սահմանափակումները։

ՉՈՐՐՈՐԴ ՀԱՐՑ։ Արդյոք Դուք, Ձերդ Գերազանցություն, պատրաստ կլինե՞ք հանդիպում ունենալու Պրեզիդենտ Տրումենի հետ, երկու կողմից ընդունելի որևէ վայրում, այդպիսի Խաղաղության Պակտ կնքելու հնարավորությունը քննարկելու համար։

ՊԱՏԱՍԽԱՆ։ Ես առաջ էլ հայտարարել եմ, որ հանդիպում ունենալու դեմ առարկություններ չկան։

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

1949 թվի փետրվարի 6-ին տեղի ունեցան Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունները։ Ամփոփվել են վերջնական արդյունքները։ Ընտրություններին մասնակցել է ընտրողների 99,99 տոկոսը։ Ժողովրդական դատավորների թեկնածուների օգտին քվեարկել է 99,70 տոկոսը, ժողովրդական ատենակալների թեկնածուների օգտին քվեարկել է 99,94 տոկոսը։

Բոլոր ընտրված ժողովրդական դատավորները և ժողովրդական ատենակալները հանդիսանում են կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներ։

(ՀԶԳ)

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ 31-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

1949 թվի փետրվարի 23-ին սովետական ժողովուրդը նշեց իր սիրելի տոներից մեկը՝ Սովետական Բանակի 31-րդ տարեդարձը։

Սովետական Բանակի տարեդարձը մենք այս տարի տոնում ենք այնպիսի պայմաններում, երբ հաջողությամբ ավարտվել են հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ տարվա պլանները, երբ մեր երկիրն ապրում է տնտեսական և կուլտուրայի հզոր վերելք, երբ է՛լ ավելի է բարձրացել սովետական ժողովրդի բարեկեցությունը։ Սովետական ժողովուրդն իր հարազատ բանակի պաշտպանության տակ, մեր պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ իրականացնում է ընկեր Ստալինի նշած Սովետական պետության հետագա զարգացման ու ամրապնդման հոյակապ պլանը։

Իսկ մյուս կողմից կապիտալիստական աշխարհը, գտնվելով վերահաս ճգնաժամի սպառնալիքի տակ, ի վիճակի չի բարձրացնելու իր տնտեսությունը, օրեցօր վատանում է ժողովրդական մասսաների դրությունը, աճում է գործազրկությունը, փակվում են գործարաններն ու ֆաբրիկաները, այդ կապակ-

ցությամբ էլ աճում է դժգոհությունը ժողովրդական մասսաների մեջ, որոնք փրկության միակ ճանապարհը ռևոլյուցիայի, դեմոկրատական կարգերի հաստատման և սոցիալիզմի մեջ են տեսնում։

Եթե Սովետական Բանակը պաշտպանում է սովետական մարդկանց խաղաղ ու ստեղծագործ աշխատանքը, ժողովուրդների խաղաղությունն ու անվտանգությունը, ապա կապիտալիստական երկրների բանակներն իրենց սվիններով պաշտպանում են գոյություն ունեցող տնտեսական ու քաղաքական ճնշումը, պաշտպանում են իմպերիալիստների, համաշխարհային նոր պատերազմի հրդեհիչների նվաճումներն ու շահերը։ Այդ տարբերությունը բխում է Սովետական Բանակի և կապիտալիստական երկրների բանակների բնույթից։

Ընկեր Ստալինը մատնանշել է մեր Բանակի երեք բնորոշ առանձնահատկությունները։ Առաջին առանձնահատկությունն այն է, որ Սովետական Բանակը աշխատավորների բանակ է՝ բանվորների և գյուղացիների բանակը, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի բանակը։ Նա կոչված է պաշտպանելու ժողովրդի շահերը։

Սովետական Բանակի երկրորդ առանձնա-



հատկությունը այն է, որ նա «Մեր երկրի ժողովուրդների միջև եղած եղբայրության բանակն է, մեր երկրի ճնշված ժողովուրդների ազատագրման բանակը, մեր երկրի ժողովուրդների ազատությունն ու անկախությունը պաշտպանող բանակն է»։

Մեր բանակի երրորդ առանձնահատկությունն այն է, «որ նա իր ծննդյան առաջին իսկ օրից դաստիարակվում է ինտերնացիոնալիզմի ոգով, դեպի մյուս ժողովուրդները հարգանք տածելու ոգով, դեպի բոլոր երկրների բանվորները սեր և հարգանք տածելու ոգով, երկրների միջև խաղաղություն պահպանելու ու հաստատելու ոգով»։

Այդպիսի բանակի ստեղծումը կենսական անհրաժեշտություն էր Սովետական պետության համար։ Բանակն անհրաժեշտ էր ինչպես տապալված դասակարգերի դիմադրությունը ճնշելու, կոնտրռևոլյուցիան երկրի ներսում ջախջախելու համար, այնպես էլ կապիտալիստական շրջապատման պայմաններում՝ արտաքին թշնամիների դեմ պայքարելու համար։

Պարտիայի կողմից ստեղծված Կարմիր Գվարդիայի ջոկատները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի օրերին ռևոլյուցիոն զինվորների ու նավաստիների

հետ միասին տապալեցին ժամանակավոր կառավարությունը և ապահովեցին սովետական իշխանության հաղթանակը։

Բայց ռևոլյուցիայի նվաճումները պաշտպանելու, ժողովրդական իշխանությունը և մեր երկրի անկախությունը պաշտպանելու, սոցիալիստական հասարակություն կառուցելու պայմաններ ստեղծելու համար հարկավոր էր ստեղծել նոր, բանվորա-գյուղացիական կադրային բանակ։

1918 թվի հունվարի 28-ին Վ. Ի. Լենինը դեկրետ ստորագրեց Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակ կազմակերպելու մասին։

Երիտասարդ Սովետական պետության նոր ստեղծված զինված ուժերը պետք է որ մարտնչեին իմպերիալիստական Գերմանիայի հարձակվող բանակների դեմ։

1918 թվականի փետրվարին մեր զինված ուժերը հերոսական մարտերում փակեցին գերմանական զորքերի ճանապարհը դեպի ռևոլյուցիոն Պետրոգրադը, այդ ճակատամարտերում ստանալով իրենց առաջին մարտական մկրտությունը։ 1918 թ. փետրվարի 23-ին Պսկովի և Նարվայի մոտ Սովետական Բանակը գլխովին ջախջախեց գերմանական հրոսակախմբերը և ետ շպրտեց նրանց դեպի Արևմուտք։ Գերմանական իմպերիալիզմի



հորդաների ջախջախման օրը դարձավ Սովետական Բանակի ծննդյան օր։

Սակայն հետագա տարիներին երիտասարդ Սովետական Բանակին վիճակվեց ավելի լուրջ մարտեր մղել արտաքին ու ներքին թշնամիների դեմ, որոնք միավորել էին իրենց ուժերը՝ սովետական իշխանության ու նրա բանակի դեմ պայքարելու համար։

1918 թվականին Սովետական Բանակի շարքերում կար շուրջ մեկ միլիոն մարդ։ Պարտիայի և կոմերիտմիության անձնակազմի մոտ կեսը գտնվում էր բանակում։

Սովետական Բանակը, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, փայլուն հաղթանակներ տարավ Ցարիցինի մոտ, որի պաշտպանությունը ղեկավարում էր անձամբ ընկեր Ստալինը, ազատագրեց գերմանացիներից Ուկրաինան, Բելոռուսիան, Մերձբալթիկան, Կովկասը։

Կարմիր Բանակի հետագա ամրապնդման գործում մեծ նշանակություն ունեցան պարտիայի 8-րդ համագումարի որոշումները։ Համագումարում ունեցած իր ելույթում ընկեր Ստալինն ասաց. «Կամ կստեղծենք իսկական բանվորա-գյուղացիական, առավելապես գյուղացիական, խիստ կարգապահ բանակ և

կպաշտպանենք Ռեսպուբլիկան, կամ կկործանվենք»։

Եվ Լենինն ու Ստալինը, բոլշևիկյան պարտիան ստեղծեցին այդպիսի բանակ։

Կարմիր Բանակը կարողացավ 1918—1922 թվականների ընթացքում ետ մղել Անտանտի գլխավորած ներքին ու արտաքին թշնամիների բոլոր գրոհները։ Նա գլխովին ջախջախեց երիտասարդ Սովետական Միության դեմ նետված Կոլչակի, Դենիկինի, Վրանգելի, Յուդենիչի, գերմանական, անգլիական, ֆրանսիական, ամերիկյան ինտերվենտների, ճապոնացիների, սպիտակ-լեհերի, սպիտակֆինների և մյուս ինտերվենտների բանակները։

Երիտասարդ Սովետական պետության զինված ուժերը պատմական հաղթանակ տարան։ Այդ հաղթանակը ցույց տվեց, որ Սովետական երկրի վրա իմպերիալիզմի ուժերի առաջին զինված արշավանքը ջախջախված էր, որ ամբողջապես ի դերև ելան օտարերկրյա ինտերվենտների ծրագրերը, որոնց նպատակն էր տապալել սովետական իշխանությունը և ստրկացնել մեր Հայրենիքը։ Այդ հաղթանակը մեր երկրի համար ստեղծեց բոլոր պայմանները խաղաղ աշխատանքի և սո-



ցիալիզմի շինարարության անցնելու համար։

Խաղաղ շինարարության տարիներին պարտիան և կառավարությունը հոգ էին տանում Սովետական պետության զինված ուժերի է՛լ ավելի ամրապնդման մասին։ Լենինը և Ստալինը սովորեցրել ու սովորեցնում են, որ քանի դեռ մենք շրջապատված ենք կապիտալիստական երկրներով, մենք պետք է լրջորեն մտածենք երկրի պաշտպանության ամրապընդման մասին։

«Պահպանեցեք, աչքի լույսի պես, մեր երկրի և մեր Կարմիր Բանակի պաշտպանունակությունը»,— ասում էր Վ. Ի. Լենինը։

1924 թվականին ընկեր Ստալինը մեր պարտիայի և ժողովրդի անունից սիրելի Իլյիչի աճյունի առջև երդում տվեց կատարելու մեծ առաջնորդի բոլոր պատգամները։ Այդ երդումում ընկեր Ստալինը խոսել է մեր երկրի զինված ուժերի մասին ևս.

«Լենինը մեզ շատ անգամ է ասել, թե կապիտալիստական պետություններից մեր նվաճած ժամանակավոր դադարը կարող է կարճատև լինել։ Լենինը մեզ շատ անգամ է մատնանշել, որ Կարմիր Բանակի ամրացումը և նրա դրության լավացումը մեր պարտիայի կարևորագույն խնդիրներից մեկն է հանդի-

տանտում։ Արդ երդվե՛նք, ընկերներ, որ մենք ուժերս չենք խնայի, որպեսզի ամրացնենք մեր Կարմիր Բանակը, մեր Կարմիր Նավատորմը»։

Բոլշևիկների պարտիան, Ի. Վ. Ստալինի ղեկավարությամբ, իրականացրեց այդ պատասխանատու խնդիրը։ Խաղաղ շինարարության տարիներին մեր երկրի Զինված ուժերը վերակազմվեցին. բարելավվեց զորքերի ուսուցման գործը, զինվորական ակադեմիաների և ուսումնական այլ հաստատությունների միջոցով լավ հիմքերի վրա դրվեց կադրերի պատրաստումը, բարձրացավ կարգապահությունը և կազմակերպվածությունը բանակում։ Կարմիր Բանակը դարձավ կադրային։

Բայց մեր բանակը ետ էր մնում տեխնիկական զինվածության տեսակետից։ Հարկավոր էր այն զինել ու հագեցնել նաև տեխնիկապես։ Այս կարևորագույն խնդիրն իրականացվեց մեր երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականության կենսագործման շնորհիվ։ Այն հաջողությամբ իրականացվեց պարտիայի և ընկեր Ստալինի ղեկավարության շնորհիվ, շնորհիվ այն բանի, որ պարտիան կարողացավ ջախջախել տրոցկիստներին ու



բուխարինականներին, ճզմել ժողովրդի թշնամական տարրերից։

Ստալինյան հնգամյակները մեր երկիրը դարձրին հզոր ինդուստրիալ-կոլխոզային տերություն, ապահովելով անհրաժեշտ միջոցների ներդրումը Սովետական Միության պաշտպանությունը կազմակերպելու համար։ 1940 թվականին, Հայրենական պատերազմի նախօրեին, մեր երկրի արդյունաբերությունը համարյա 12 անգամ ավելի արտադրանք էր տալիս, քան 1913 թվականին։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը համապատասխանաբար աճել էր կրկնակի չափով։

Դրա հիման վրա էլ աճեց մեր բանակի ռազմական և տեխնիկական զինվածությունը։ Եթե 1930 թվականին այդ զինվածությունն ընդունենք 100 տոկոս, ապա 1939 թվականին բանակի ռազմական տեխնիկան աճեց՝ տանկերի գծով՝ 4.300 տոկոսով, ավիացիայի գծով՝ 656 տոկոսով, ծանր, միջին ու թեթև հրետանու գծով՝ 692 տոկոսով, փոքր տրամաչափի, հակատանկային և տանկային հրետանու գծով՝ 7000 տոկոսով, գնդացիրների գծով՝ 539 տոկոսով։

Այդ տեխնիկական բազայի հիման վրա

սովորեցին ու աճեցին նոր հրամանատարական կադրեր։

Բանակը սովորում էր ոչ միայն ռազմական գործը։ Քաղաքական դաստիարակության լավ կազմակերպումը բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ անխորտակելի դարձրին բանակի ոգին, նրա շարքերի բարոյական-քաղաքական միասնությունը։

Այսպիսով, երկրորդ համաշխարհային պատերազմից շատ առաջ, բոլշևիկյան պարտիան, կանխատեսելով վերահաս վտանգը, մեր ամբողջ երկիրը նախապես ակտիվ պաշտպանության նախապատրաստեց։

Մինչև Հայրենական պատերազմը մեր բանակը դիմացավ մի շարք փորձությունների, ցույց տալով իր մարտական և բարոյական-քաղաքական անհամեմատ գերազանցությունը կապիտալիստական երկրների բանակների նկատմամբ։ Մարտական գործողությունները Չին-Արևելյան երկաթուղու շրջանում 1929 թվականին, իրադարձությունները Խասան լճի մոտ և ապա Խալխին-Գոլում 1938—1939 թվականներին, սովետա-ֆիննական պատերազմը 1939—1940 թվականներին՝ այդ գերազանցության ապացույցներն էին։

Բայց սովետական ժողովրդի և նրա բանա-



կի ուժի ու հզորության ամենամեծ քննությունը Հայրենական Մեծ պատերազմը հանդիսացավ։ Արբեցած Արևմուտքում ունեցած իրենց ռազմական հաջողություններով, օգտվելով իրենց մոբիլիզացված զորքերի ու տեխնիկայի գերակշռությունից, գերմանա-ֆաշիստական հրոսակախմբերը 1941 թվի հունիսի 22-ին հարձակվեցին մեր Հայրենիքի վրա և սկզբնական շրջանում ունեցան որոշ հաջողություններ։ Երեք ուղղությամբ շարժվելով դեպի Արևելք, նրանք նպատակ ունեին զավթել Լենինգրադը, Մոսկվան ու Կիևը և այդ գծից արևմուտք ընկած բոլոր հողերը։ Հետագայում, ըստ խելացնոր Հիտլերի «կայծակնային պատերազմի» պլանի, ֆաշիստները մտադիր էին հասնել Ուրալ և 2—3 ամսվա ընթացքում վերջացնել պատերազմը։

Բայց այդ ավանտուրիստական պլաններին վիճակված չէր իրականանալու։ 1941—1942 թվականների ձմռանը Մոսկվայի մոտ նրանք ամբողջ պատերազմի ընթացքում ստացան առաջին առարկայական դասը։ Չնայած իրենց զորքերի հսկայական կենտրոնացմանը Մոսկվայի մոտ, գերմանացիներին չհաջողվեց գրավել Սովետական պետության մայրաքաղաքը։ Սովետական զորքերի Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի

անմիջական ղեկավարությամբ կազմակերպվեց Մոսկվայի պաշտպանությունը, մշակվեց հակառակորդի ուժերը հյուծելու՝ հետագայում հակահարձակման անցնելու պլանը։ Այդ հակահարձակումը սկսվեց 1941 թ. դեկտեմբերի 6-ին։ Սովետական Բանակի փայլուն կերպով կազմակերպված հարձակման հետևանքով Մոսկվայի մոտ թշնամին ջախջախվեց և տեղ-տեղ ավելի քան 400 կիլոմետր շպրտվեց դեպի Արևմուտք։ Դա գերմանացիների առաջին խոշոր պարտությունն էր երկրորդ համաշխարհային պատերազմում։ Այսպիսով, Սովետական Բանակը օդը ցնդեցրեց հիտլերյան «կայծակնային պատերազմի» ցնորամիտ պլանը։

Օգտվելով երկրորդ ճակատի բացակայությունից Արևմուտքում և իրենց ուժերը կենտրոնացնելով ամբողջ ռազմաճակատի մեկ հինգերորդ մասում, գերմանացիները 1942 թ. ամռանը հարձակման անցան հարավ-արևմտյան ուղղությամբ և հասան մինչև Ստալինգրադ և Կովկասյան լեռնաշղթան։ Նրանք մտադիր էին շրջանցելով դուրս գալ Մոսկվայի թիկունքը և գրավել այն։ Պաշտպանողական հերոսական մարտերում հյուծելով հակառակորդի ուժերը, Սովետական զորքերը կատարեցին ընկեր Ստալինի հրամանը՝ «Ոչ



մի քայլ ետ», իսկ հետո էլ անցան հարձակման լայն ճակատով։ 1942 թվականի աշնանը և 1942—43 թվականների ձմռանը նրանք մաքրեցին Կովկասը, շրջապատեցին և ոչնչացրին գերմանական 330-հազարանոց բանակախումբը Ստալինգրադի մոտ։

«Ստալինգրադը գերմանա-ֆաշիստական բանակի մայրամուտն էր» (Ստալին)։ Ստալինգրադից հետո սկսվեց մեր զորքերի հաջող հարձակումը ամբողջ ռազմաճակատում։

1943 թ. ամռանը Կուրսկի մոտ գերմանական զորքերը մտադրվել էին մեկ անգամ ևս փորձել իրենց բախտը՝ շրջապատել ու գրավել Մոսկվան հարավից, բայց ջախջախվեցին ամբողջապես։ Կուրսկի մոտ մղված ճակատամարտը, ընկեր Ստալինի արտահայտությամբ՝ գերմանական բանակը կանգնեցրեց կատաստրոֆի առաջ։

Դրանից հետո սկսվեց գերմանացիների մասսայական վռնդումը ժամանակավորապես օկուպացված Սովետական տերիտորիայից։ Ոչինչ չէր կարող կանգնեցնել սովետական զորքերի հարձակումը՝ ոչ ջրային արգելափակոցները, ոչ էլ զանազան ամրությունները ու պատվարները։ Թիկունքից ստանալով մըշտապես աճող քանակով տեխնիկա, սպառազինություն ու ռազմամթերքներ, սովետա-

կան զորքերն ուժեղացնում էին հարձակման թափն ու հզորությունը։

1943 թվականը բեկման տարի դարձավ պատերազմի համար։ Թշնամին հարձակումից անցավ պաշտպանության։

Ստալինյան տասը հարվածները 1944 թվականին վերջնականապես մաքրեցին մեր երկիրը թշնամու զորքերից։ Սկսվեց ֆաշիստական բլոկի քայքայումը։ Պատերազմը տեղափոխվեց հակառակորդի տերիտորիան։

Մեն-մենակ պատերազմելով մինչև ատամները զինված և ուժեղ ֆաշիստական Գերմանիայի դեմ, Սովետական Միությունը նրան կատաստրոֆի առաջ կանգնեցրեց։ Մեր հաղթանակն արդեն ակնհայտ էր։ Ստեղծված ռազմական իրադրությունը նշանակում էր, որ Սովետական Միությունն ի վիճակի է առանց դաշնակիցների օգնության, իր սեփական ուժերով օկուպացնելու ամբողջ Գերմանիան և իրագործելու Ֆրանսիայի ազատագրումը։ Ահա այդ ժամանակ միայն Անգլիան և Ամերիկան 1944 թ. ամռանը բաց արին երկրորդ ճակատ։ Բայց դրանից հետո էլ, որպես հիմնական ռազմաճակատ, մնում էր արևելյանը, հիմնական ծանրությունը դարձյալ Սովետական Միության Զինված ուժերն էին կրում։



Սովետական զորքերի նոր, հզոր հարվածները 1945 թվականի սկզբին լիակատար ջախջախման հասցրին ֆաշիստական Գերմանիային ու նրա դաշնակիցներին։ Ապրիլի 30-ին հաղթանակի դրոշը բարձրացվեց գերմանական Ռայխստագի շենքի վրա, իսկ մայիսի 2-ին անձնատուր եղավ Բեռլինը։ Վեց օրից հետո՝ մայիսի 8-ին գերմանական գլխավոր հրամանատարության ներկայացուցիչները ստորագրեցին անվերապահ կապիտուլյացիայի ակտը։

Պատերազմը Արևմուտքում ավարտվեց ազատասեր ժողովուրդների հաղթանակով՝ ՍՍՌ Միության գլխավորությամբ։

Սովետական Բանակը վճռական դեր խաղաց նաև իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախման գործում։ Մեկ ամսից էլ պակաս ժամանակամիջոցում՝ սկսած 1945 թ. օգոստոսի 9-ից Մանջուրիայում ջախջախվեց Ճապոնիայի ամենահզոր ցամաքային բանակը՝ Կվանտունյան բանակը, որն ուներ լավ զինված ու վարժեցրած մինչև 1 միլիոն 200 հազար զինվոր։ 1945 թ. սեպտեմբերի 2-ին Ճապոնիան կապիտուլյացիա հայտարարեց։ Այսպիսով, Սովետական Միության Զինված ուժերի շնորհիվ, երկրորդ համաշխարհային պատերազմը վերջացավ ռեակ-

ցիայի ու ֆաշիզմի ուժերի դեմ պրոգրեսիվ ուժերի տարած հաղթանակով։ Ձեռք բերվեց համաշխարհային-պատմական հաղթանակ, որի հետևանքով մարդկությունը և համաշխարհային կուլտուրան փրկվեցին ճնշումից, վայրենացումից, ստրկացումից ու ոչնչացումից։ Սովետական ժողովուրդը փրկեց ոչ միայն ամենաառաջավոր, սոցիալիստական իրավակարգը, այլև բոլոր ազատասեր ժողովուրդների ազատությունն ու անկախությունը։

Աշխարհում առաջին սոցիալիստական երկրի վրա իմպերիալիզմի ուժերի գործած երկրորդ գրոհը նույնպես տապալվեց։

Սովետական Բանակի և ժողովրդի մեծագույն ուժի հիմքը սովետական սոցիալիստական հասարակարգն է։ Սոցիալիստական իրավակարգն ամուր թիկունք ապահովեց մեր բանակին։ Հաղթահարելով բոլոր դըժվարությունները, սովետական բազմազգ ժողովուրդը չէր խնայում իր ուժերն ու եռանդը՝ հաղթանակի համար։

Մեր երկրի արդյունաբերությունն արդեն 1943 թվականին բանակին տալիս էր այնքան սպառազինություն, որ սովետա-գերմանական ճակատի առաջավոր գծում գտնվող ֆաշիստական յուրաքանչյուր բան-



դիտի գլխին հասնում էր կես տոննա մետաղ՝ լցված պայթուցիկ նյութով։

Հայրենական պատերազմի վերջին երեք տարիների ընթացքում Սովետական Միության մեջ տարեկան միջին հաշվով արտադրվում էր ավելի քան 30 հազար տանկ, ինքնագնաց և զրահամեքենա, մոտ 40 հազար ինքնաթիռ, բոլոր տրամաչափերի մոտ 120 հազար հրանոթ, մոտ 450 հազար ձեռքի և հաստոցավոր գնդացիր, ավելի քան 3 միլիոն հրացան, մոտ 2 միլիոն ավտոմատ, մոտ 100 հազար ականանետ։ Միայն 1944 թվին արտադրվել է ավելի քան 240 միլիոն արկ, ռումբ և ական և 7 միլիարդ 400 միլիոն փամփուշտ։

Այս թվերը ցույց են տալիս, որ պատերազմը ոչ միայն բանակների, այլև թիկունքների պատերազմ էր։

Հայրենական պատերազմում ձեռք բերված հաղթանակն արդյունք է այն բանի, որ Սովետական Բանակը ղեկավարվում էր ստալինյան ստրատեգիայով և տակտիկայով, որը գերազանցում էր գերմանական շաբլոն տակտիկային ու արատավոր ստրատեգիային։ Ստալինյան ռազմական գիտությամբ զինված սովետական գեներալներն ու սպաները ցույց տվեցին հակառակորդի ուժերը

շրջապատելու և ոչնչացնելու, պաշտպանողական գծերը ճեղքելու չգերազանցված օրինակներ՝ զորքերի բոլոր տեսակների հմուտ համագործակցման հիման վրա։

Մեր երկրի ուժի ու հզորության աղբյուրը բոլշևիկյան մեծ պարտիան է, որ մեր ժողովրդի ուժն ու եռանդը ուղղել և ուղղում է Լենինի և Ստալինի նշած ճանապարհով և որը հանդիսանում է մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչը։ Սովետական ժողովրդի մեծ հաղթանակում բացառիկ էր ընկեր Ստալինի դերն ու երախտիքը։

«Այդ մեր երջանկությունն է,—ասում է ընկեր Մոլոտովը,—որ պատերազմի դժվար տարիներին Սովետական Բանակին ու սովետական ժողովրդին առաջ էր տանում Սովետական Միության իմաստուն և փորձված առաջնորդ մեծ Ստալինը»։

Պատմության մեջ մեծագույն այդ հաղթանակի շնորհիվ Սովետական Միությունն ամրացրեց իր սահմանները Արևմուտքում և Արևելքում։ Սովետական ժողովուրդն անցավ խաղաղ ու ստեղծագործ աշխատանքի։

Փառապանծ Սովետական Բանակն այժմ կանգնած է մեր խաղաղ աշխատանքի պաշտպանության դիրքերում, ժողովրդի ա-



զատության ու անկախության պաշտպանության դիրքերում։

Այն ժամանակ, երբ ԱՄՆ-ի, Անգլիայի, Հոլանդիայի, Ֆրանսիայի և կապիտալիստական մյուս երկրների բանակները զինված ուժով ճնշում են Հունաստանի, Ինդոնեզիայի, Վյետնամի և մյուս երկրների ժողովուրդների ազատությունը, մեր բանակը առաջվա պես շարունակում է մնալ որպես ժողովուրդների միջև խաղաղության ու բարեկամության պաշտպան և կործիք։ Նրան սիրում ու հարգում են աշխարհի բոլոր ժողովուրդները և առանձնապես՝ նոր դեմոկրատիայի երկրների ժողովուրդները, որոնց մեր Բանակը ազատեց կապիտալիզմի լծից։

Սովետական Բանակի հետագա ուժեղացումն ու ամրապնդումը, ինչից որ շատ են վախենում նոր պատերազմի հրձիգները, կապված է մեր երկրի զարգացման, հետպատերազմյան հնգամյակի պլանների և մեծ Ստալինի հանճարեղ նախագծումների կատարման ու գերակատարման հետ։

Հ. ԻՆՋԻԿՅԱՆ

Պատերազմը ցույց տվեց, որ Կարմիր Բանակը ոչ թե «կավե ոտներով հսկա» է, այլ մեր ժամանակի առաջնակարգ բանակ, որն ունի միանգամայն ժամանակակից սպառազինություն, ամենափորձված հրամանատարական կազմ և բարոյական-մարտական բարձր հատկություններ: Չպետք է մոռանալ, որ Կարմիր Բանակը այն նույն բանակն է, որը գլխովին ջախջախեց գերմանական բանակին, որ դեռևս երեկ սարսափ էր տարածում եվրոպական պետությունների բանակների վրա:

И. Վ. ՍՏԱԼԻՆ

# ՀԵՐՈՍԱԿԱՆ ԷՋԵՐ

## Մ Ո Ս Կ Վ Ա

1941 թվի նոյեմբերին, ձմեռային հարձակման ժամանակ գերմանացիները Մոսկվայի վրա նետեցին 51 դիվիզիա, այդ թըվում 13 տանկային և մոտո-մեքենայացված դիվիզիա: Պաշտպանական մարտերում հյուծելով թշնամուն, Սովետական Բանակն անցավ հարձակման և թշնամուն Մոսկվայից տեղ-տեղ ետ շպրտեց 400 կիլոմետր: Այդ



մարտերի ժամանակ, 1941 թվի դեկտեմբերի 6-ից մինչև 1942 թվի հունվարի 15-ը, գերմանացիները կորցրին 300 հազար զինվոր ու սպա: Ոչնչացվեց 1.100 ինքնաթիռ: Մեր զորքերը գրավեցին 4.801 հրանոթ, 3.071 ականանետ, 8.000 գնդացիր, 15.000 ավտոմատ, ավելի քան 90 հազար հրացան, 2.765 տանկ, 33.640 ավտոմեքենա:

## ՍՏԱԼԻՆԳՐԱԴ

1942 թվին գերմանա-ֆաշիստական հրամանատարությունը մեծ ուժեր կենտրոնացնելով հարավում, շարժվեց դեպի Ստալինգրադ: Նրան հաջողվեց դուրս գալ Վոլգա: Ստալինգրադի մոտ 5 ամսից ավելի շարունակվեց կատաղի ճակատամարտ:

1942 թվի նոյեմբերի 19-ին Սովետական Բանակը անցավ հարձակման: Հարձակողական մարտերի 6 շաբաթվա ընթացքում լիովին ջախջախվեցին գերմանական 36 դիվիզիա և շրջապատվեցին 22-ը:

Ստալինգրադում թշնամին մարտի դաշտում թողեց 147.200 սպանված զինվոր ու սպա, վերցվեց 91 հազար գերի, որոնցից 2.500 սպա և 24 գեներալ: Գրավվեց 750 ինքնաթիռ, 1.550 տանկ, 6.700 թնդանոթ, 1.462 ականանետ, 8.135 գնդացիր, 90.000

հրացան, 61.102 ավտոմեքենա, 7.369 մոտոցիկլետ, 56 շոգեքարշ, 1.125 երկաթուղային վագոն։

## ՕՐՅՈԼ-ԿՈՒՐՍԿԻ ԱՂԵՂԸ

1943 թվի ամռանը Օրյոլ—Կուրսկի շրջանում ստեղծված աղեղի ուղղությամբ թշնամին նետեց 17 տանկային և 18 հետևակային դիվիզիա ու մեծ թվով ինքնաթիռներ։ Երկու կողմերից ռազմաճակատի մեկ կիլոմետրի վրա մարտի մեջ էին մտցվել 100—150 տանկ, 100—200 թնդանոթ և ականանետ, մոտ 100 հակատանկային հրացան և մի քանի հարյուր գնդացիր։

Թշնամու հարձակման և մեր զորքերի հակահարձակման մեկ ամսվա ընթացքում թշնամին կորցրեց 12 հազար սպանված, 19.400 գերի, ոչնչացվեց 4.605 տանկ, 1.623 հրանոթ, 2.492 ինքնաթիռ, 11.000 ավտոմեքենա։ Գրավվեց 521 տանկ, 876 հրանոթ և այլն։

## ԿՈՐՍՈՒՆ-ՇԵՎՉԵՆԿՈՅԻ ԿԱԹՍԱՆ

Այն օրերին, երբ սովետական ամբողջ երկիրը տոնում էր Ստալինգրադի մոտ տարած հաղթանակի առաջին տարեդարձը, Սովետական Բանակի զորամասերը Դնեպրի աջ ափին իրականացրին մի նոր «Ստալին-



գրադ»։ Շրջապատվեց թշնամու 8-րդ բանակը, որի կազմում էին 10 դիվիզիա և մեկ բրիգադ։

Շուտով շրջապատման օղակը սեղմվեց և գերմանական 8-րդ բանակը դադարեց գոյություն ունենալուց։ Ոչնչացվեց 55 հազար և գերի վերցվեց 18 հազար 200 զինվոր ու սպա։ Սպանվածների թվում էր 8-րդ բանակի հրամանատար գեներալ Շտեմմերմանը։

## ԲԵՌԼԻՆԻ ԱՆԿՈՒՄԸ

Բեռլինի վրա տեղի ունեցած գրոհի ժամանակ Սովետական հրամանատարությունը թշնամու դեմ նետեց ավելի քան 4.000 տանկ, հրետանու և ականանետների քսաներկու հազար փողերի աջակցությամբ։ Օդից հարվածն ուղեկցվում էր 4—5 հազար ինքնաթիռներով։

Գերմանացիների կողմում Բեռլինի գործողությանը մասնակցում էր ավելի քան կես միլիոն զորք։ Դրանցից ավելի քան 300 հազարը սովետական զորքերը գերի վերցրին, 150 հազարը սպանվեց, մնացածները դես ու դեն փախան։

1945 թվականի ապրիլի 23-ին Սովետական զորքերը մտան Գերմանիայի մայրա-

քաղաքը—Բեռլին։ Ապրիլի 30-ին, շարունակելով Բեռլինում փողոցային մարտերը, մեր զորքերը գրավեցին գերմանական Ռայխստագի շենքը, որի վրա բարձրացրին Հաղթանակի Դրոշը։

Մայիսի 2-ին մեր զորքերը լրիվին գրավեցին Գերմանիայի մայրաքաղաք Բեռլինը։

Մայիսի 8-ին Բեռլինում գերմանական գերագույն հրամանատարության ներկայացուցիչները ստորագրեցին գերմանական զինված ուժերի անվերապահ կապիտուլացիայի ակտը։

Մայիսի 9-ին ընկեր Ստալինը ռադիոյով դիմեց ժողովրդին՝ շնորհավորելով նրան Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտման առթիվ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով Մայիսի 9-ը սահմանվեց որպես Հաղթանակի տոն։

## ՃԱՊՈՆԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ՋԱԽՋԱԽՈՒՄԸ

1945 թվի օգոստոսի 9-ին Սովետական Բանակի Հեռավոր Արևելյան զորամասերը հարձակողական մարտեր սկսեցին ճապոնական զորքերի դեմ, Սովետական Բանակի շարժուն զորամասերի առաջխաղացման



տեմպը հասնում էր օրական 100—120 կիլոմետրի։

Երեք շաբաթվա հարձակողական մարտերի ընթացքում Սովետական Բանակը լրիվին ջախջախեց ճապոնական Կվանտունյան բանակը։ Ճապոնացիները մարտերում կորցրին ավելի քան 80.000 սպանված, գերի վերցվեց մոտ 600.000 զինվոր ու սպա, 148 գեներալ։ Հարձակման ժամանակ Անդրբայկալյան ռազմաճակատի զորքերը առաջ շարժվեցին 950 կիլոմետր։

Միայն շնորհիվ ամբողջ պարտիայի ուժերի լարման, Լենինի՝ կամքի ու հաստատամտության այս տիտանի անմիջական ղեկավարությամբ, միայն այնպիսի կազմակերպիչների անձնուրաց աշխատանքի շնորհիվ, որպիսին Ստալինն է, որ կարճ ժամանակամիջոցում դարձավ մեր իսկական բոլշևիկյան ռազմական մասնագետը, մեզ հաջողվեց կազմակերպել Կարմիր Բանակը և հաղթել բազմաթիվ ռազմաճակատներում։

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ

# ՓԱՅԼՈՒՆ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՏԱՐԻ

Հայկական ՍՍՌ վիճակագրական վարչությունը հրապարակել է Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1948 թվի պետական պլանի կատարման արդյունքները։

Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 1948 թվի պլանը կատարված է 110,6 տոկոսով։ Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, ավելացել է 22 տոկոսով և նախապատերազմյան 1940 թվի համեմատությամբ՝ 66,3 տոկոսով, ըստ որում արդյունաբերական արտադրանքի կարեվորագույն տեսակների արտադրության 1948 թվի պլանը, 1947 թվի համեմատությամբ, կազմում է (տոկոսներով). պղնձի հանքաքար՝ 116,5, էլեկտրաէներգիա՝ 105,7, մետաղահատ դազգահ՝ 164,8, Տ. Մ. 180/6 տրանսֆորմատոր՝ 4,2 անգամ, կոմպրեսոր՝ 4 անգամ



սուպերֆոսֆատ՝ 240, կաուստիկ սոդա՝ 147,4, ավտոդող՝ 141,9, էլեկտրական մետաղալար՝ 213,5, պղնձի մերկ կաբել՝ 172,7, ցեմենտ՝ 222,4, մուլիտի սալեր՝ 160,5, լուսամուտի ապակի՝ 215,1, տուֆ՝ 157,4, մահճակալ՝ 162, ժամացույց 238,6, բամբակեղեն գործվածք՝ 125,5, բրդեղեն գործվածք՝ 177,6, գուլպա՝ 147,2, ամեն տեսակի կոշիկ՝ 104,5, կոշտ կաշի՝ 145, կենդանական յուղ՝ 134,6, միս՝ 129,6, հրուշակեղեն՝ 180,9, մակարոն՝ 133,7, լվացքի օճառ՝ 122,5, կոնյակ՝ 146,6 տոկոս և այլն։

***

1948 թվին գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը, 1947 թվի համեմատությամբ ավելացել է 6.900 հեկտարով։ Տեխնիկական կուլտուրաների ցանքատարածության ընդարձակման համար հետպատերազմյան հնգամյակի առաջադրանքը կատարվել է 1948 թվին։

1948 թվին ռեսպուբլիկայի ՄՏ կայանները տնտեսել են 764 ցենտներ վառելանյութ և տվել 1.353.000 ռուբլու արտապլանային կուտակում։ 1949 թվի բերքի համար աշնանացանի պլանը կատարվել է 106,4

տոկոսով և 6.700 հեկտար ավելի է ցանվել, քան 1947 թվին։

***

Կապիտալ աշխատանքների ծավալը 1948 թվին Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության մեջ 1947 թվի համեմատությամբ կազմել է 110,5 տոկոս, այդ թվում էլեկտրաարդյունաբերության գծով՝ 350 տոկոս, թեթև արդյունաբերության գծով՝ 160 տոկոս, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության գծով՝ 201,7 տոկոս, բնակարանային տնտեսության գծով՝ 106,3 տոկոս։

1948 թվին կառուցվել և շահագործման է հանձնվել 48,5 հազ. քառակուսի մետր բնակելի տարածություն։

Քաղաքներում և քաղաքատիպ ավաններում 1948 թվին բանվորները և ծառայողները պետությունից ստացած վարկերի հաշվին կառուցել են 2.333 տուն, իսկ գյուղական վայրերում հետպատերազմյան հնգամյակի 3 տարում կառուցվել է 6.322 բնակելի տուն։

***

Քարտային սիստեմը վերացնելու և 1947 թվի վերջում դրամական ռեֆորմ անցկացնելու հիման վրա, մանրածախ առևտրական ցանցը 1947 թվի համեմատությամբ աճել է



5 տոկոսով, հանրային սննդի ցանցը՝ 7,8 տոկոսով։ Հացի վաճառքը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, ավելացել է 133 տոկոսով, շաքարինը՝ 118 տոկոսով, կենդանական յուղինը՝ 17,1 տոկոսով, լվացքի և ձեռքի օճառինը՝ 57,4 տոկոսով։

Կոոպերատիվ առևտրի գները ռեսպուբլիկայի քաղաքներում 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, իջել են 40-ից մինչև 50 տոկոսով, կոլխոզային շուկայի գները այդ նույն ժամանակամիջոցում՝ 20-ից մինչև 35 տոկոսով։

***

Բանվորների և ծառայողների թիվը Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության մեջ 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, ավելացել է 14 հազար մարդով, գերազանցապես արդյունաբերության ասպարեզում։

Աշխատանքի արտադրողականության աճը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, կազմել է. քիմիական արդյունաբերության մեջ 17,1 տոկոս, էլեկտրաարդյունաբերության մեջ՝ 59,2 տոկոս, սննդարդյունաբերության մեջ՝ 24,4 տոկոս, դազգահաշինական արդյունաբերության մեջ՝ 15 տոկոս։

Արհեստագործական և երկաթուղային ու-

տեխնիկումները և ֆաբ-գործարանային ուսուցման դպրոցները 1948 թվին տվել են 2.647 երիտասարդ որակյալ բանվորներ։

***

Աշակերտների թիվը տարրական, ոչ լրիվ միջնակարգ և միջնակարգ դպրոցներում 1947 թվի համեմատությամբ ավելացել է

Դպրոցների թիվը ավելացնելու, ինչպես նաև աշակերտներին տարրական, ոչ լրիվ միջնակարգ և միջնակարգ դպրոցներում ընդգրկելու՝ հետպատերազմյան ստալինյան հնգամյակի առաջադրանքը ռեսպուբլիկան կատարել է 1948 թվի վերջին։

1948 թվին ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունները տվել են 1.325 երիտասարդ մասնագետ, այդ թվում 479 մանկավարժ, 190 բժիշկ, 288 ինժեներ և 169 գյուղատնտես։

---



# ԽՆԱՅԵՆՔ ՎԱՌԵԼԱՆՅՈՒԹԸ

Շոգեքարշային դեպոյում աշխատանքային պայմանները մեծ չափով տարբերվում են արդյունաբերական մյուս ձեռնարկությունների պայմաններից։ Անընդհատ աշխատանքը, մեքենավարների մի մասի երթևեկության մեջ գտնվելը հնարավորություն չեն տալիս ի մի հավաքել դեպոյի ամբողջ կոլեկտիվը, թեկուզ հերթափոխություններով։ Բայց այս չի խանգարում Լենինականի Շոգեքարշային դեպոյի պարտիական կազմակերպությանը՝ կոլեկտիվի մեջ լավագույն կերպով կազմակերպելու ագիտացիոն-մասսայական աշխատանքը, նրա միջոցով պայքար ծավալելու ստալինյան նոր հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։

Դեպոյի հիմնական ցեխերից մեկի՝ շոգեքարշային ցեխի ագիտատորներն են՝ ցեխի պարտբյուրոյի քարտուղար ընկ. Գ. Սարգըսյանը և ընկ. Վ. Ղանդիլյանը։ Ագիտացիոն-մասսայական գործի լավ կազմակերպման շնորհիվ ցեխում զգալի չափով բարձրացել է

աշխատանքի արտադրողականությունը, ավելացել է վառելիքի տնտեսումը։

Ագիտատորներն այստեղ լայնորեն օգտագործում են ագիտացիայի այնպիսի ձև, ինչպիսին է արտադրության առաջավորների կենդանի խոսքը։

Ահա ագիտատոր ընկ. Վ. Ղանդիլյանի անցկացրած ագիտացիոն ժամերից մեկը։

— Մեր դեպոն,— ասում է ագիտատորը,— անցյալ տարի տվեց մոտ 800 տոննա վառելիքի տնտեսում։ Հին, փորձված մեքենավար Մկրտիչ Թորոսյանը տնտեսեց 130 տոննա վառելանյութ, մեքենավար Հմայակ Գաբրիելյանը՝ 75 տոննա, երիտասարդ մեքենավարներ Հայկ Գաբրիելյանը և Հովհաննես Փափանյանը վերջին երկու ամսում տվել են յուրաքանչյուրը մոտ 30 տոննա վառելիքի տնտեսում։ Չէ՞ որ այդպես կարող են աշխատել մեր բոլոր մեքենավարները։

— Այո, ճիշտ է,— լսվում է մի ձայն։

— Ճիշտ եմ ասում, չէ՞, ընկեր Մկրտչյան, —խոսողին է դիմում ագիտատորը։

— Միանգամայն իրավացի եք,— պատասխանում է անվանի մեքենավար Մկրտիչ Թորոսյանը։ Վառելիքի տնտեսում կարող է կատարել մեր մեքենավարներից յուրաքանչյուրը։ Դրա համար անհրաժեշտ է միշտ լավ



վիճակում պահել շոգեքարշը, վառելիք ծախսելիս հաշվի առնել յուրաքանչյուր կիլոգրամը։ Այո, թող ձեզ զարմանալի չթվա։ Իմ 130 տոննան ես տնտեսեցի կիլոգրամներով։ Եթե դու անուշադիր ես դեպի հնոցդ, չես հաշվում, թե այդ նույն րոպեին ինչ կարողություն ունի նա և նրա մեջ ես նետում թեկուզ մի բահ ածուխ, ուրեմն դրանով դու այդ մեկ-երկու կիլոգրամ վառելիքը իզուր այրեցիր և օդին տվիր։

Եվ ես չեմ հասկանում,— հուզված շարունակում է անվանի մեքենավարը,— ինչպե՞ս կարելի է մեր հարազատ եղբայրների քրտինքով արտադրած ածուխը, կամ մազութը իզուր տեղը այրել։ Ի՞նչ կասեն մեզ Դոնբասի ածխահատները, կամ Բաքվի նավթագործները, եթե իմանան, որ մեզ մոտ կան մեքենավարներ, որոնք երկրի խորքից նրանց հանած վառելանյութը իզուր տեղն այրում ու քամուն են տալիս։ Նրանք մեզ կասեն, որ դուք սովետական մարդու նման չեք մտածում ու աշխատում։

Մեծավաստակ մեքենավարի խոսքերը խորը տպավորություն են թողնում լսողների վրա։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը տալիս է փայլուն արդյունքներ։ Ամփոփելով

1948 թվի իրենց կատարած աշխատանքը, շողեքարշայինները պարտավորվեցին ստալինյան հնգամյակի եզրափակիչ՝ 4-րդ տարում աշխատել ավելի լավ, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, տնտեսել ավելի շատ վառելիք, ավելացնել գերպլանային վազքը և անցյալ տարվա 400 հազար ռուբլու փոխարեն այս տարի տալ կես միլիոն ռուբլու տնտեսում։

Մ. ՆԱՐՅԱՆ

---

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐՆ ՕԳՆՈՒՄ ԵՆ ՄՏ ԿԱՅԱՆԻ ՊԼԱՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆԸ

Հաջող կերպով ավարտելով 1948 թվի գյուղատնտեսական աշխատանքները, Հոկտեմբերյանի հենակետային-ցուցադրական ՄՏ կայանի կոլեկտիվը ձեռնամուխ եղավ այս տարվա գարնանացանի նախապատրաստությանը։ ՄՏ կայանը պետք է վերանորոգեր 36 տրակտոր, 36 գութան, 10 շարքացան, 22 կուլտիվատոր, 5 կալսիչ և այլ գյուղատնտեսական գործիքներ։

Արձագանքելով Ախուրյանի շրջանի ՄՏ կայանի աշխատողների կոչին, Հոկտեմբերյանի ՄՏ կայանի կոլեկտիվը պարտավորություն վերցրեց՝ տրակտորների և գյուղատնտեսական գործիքների աշնան-ձմեռային վերանորոգումն ավարտել ժամկետից մեկ ամիս շուտ։ Այդ պարտավորությունը պատվով կատարելու համար ՄՏ կայանի պարտիական կազմակերպությունը լայնորեն ծավալեց ստախանովյան շարժումը տրակտորային բրիգադաներում և արհեստանոցի աշխատողների մեջ։ Իրենց կնքած սոցիալիստական մրցության պայմանագրերի մեջ տրակտորային բրիգադաները, առանձին աշխատողներ գյուղատնտեսական մեքենաների ու գործիք-

ների վերանորոգումը ժամկետից շուտ ավարտելու վերաբերյալ կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին։

Սոցիալիստական մրցության ծավալման, առաջավորների փորձի փոխանակման գործում ՄՏ կայանի պարտիական կազմակերպության ակտիվ օգնականն է հանդիսանում ագիտկոլեկտիվը։ Ագիտատորները ՄՏ կայանի աշխատողների մեջ լայնորեն մասսայականացնում են գյուղատնտեսության նոր հուժկու վերելք կազմակերպելու, բերքատվության բարձրացման մասին մեր պարտիայի ու կառավարության որոշումները, հետաքրքիր զրույցների, կենդանի խոսքի, կոնկրետ օրինակների միջոցով ոգեշնչում և օգնում աշխատողներին՝ արտադրական ավելի բարձր ցուցանիշների հասնելու համար։

Բերենք մի քանի օրինակներ։

Տրակտորների աշնան-ձմեռային վերանորոգումներն սկսվելուց մի քանի օր անց ՄՏ կայանի ագիտկոլեկտիվի ղեկավար Մ. Գրիգորյանը, ագիտկոլեկտիվի պարապմունքին քննության դրեց մեքենաների նորոգումների առաջին օրերի արդյունքները։ Նա մի քանի օրինակներով ցույց տվեց, որ առանձին տրակտորային բրիգադաներ, ընկնելով բարձր ցուցանիշների ետևից, նորոգումը կատարում



են անորակ։ Ապա նա ագիտատորներին առաջադրանք տվեց՝ ստուգել մեքենաների նորոգման որակն իրենց ամրացված բրիգադաներում, այդ մասին զրուցել տրակտորիստների հետ և օգնել վերացնելու նկատվող թերությունները։

Ագիտատորներն այդպես էլ արին։ Ագիտատոր Պ. Ներսիսյանը, ստուգելով իրեն ամրացված բրիգադայի տրակտորների վերանորոգման որակը, պարզեց, որ տրակտորիստներ Վ. Անտոնյանը և Վ. Իսահակյանը տրակտորների վերանորոգումը կատարում են անորակ, ճիշտ չեն տեղադրում տրակտորների առանձին մասեր։ Հենց նույն օրը, աշխատանքի ժամին ագիտատորն այդ մասին զրուցեց բրիգադայի հավաքույթում։ Զրույցի ժամանակ պարզվեց, որ տրակտորիստները այդ մասերը ճիշտ չեն տեղադրում տեխնիկային ոչ լրիվ տիրապետելու հետևանքով։ Ագիտատոր Պ. Ներսիսյանն այդ մասին հայտնեց ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Մ. Գրիգորյանին։ Ընկ. Գրիգորյանը, լսելով ագիտատորի հաղորդումը, հանձնարարեց ինժեներ-մեխանիկ, ագիտատոր Գ. Մուրադյանին՝ սովորեցնել, օգնել վերոհիշյալ տրակտորիստներին վերացնելու այդ թերությունները։ Բայց ագիտկոլեկտիվի ղեկավարը

միայն դրանով չսահմանափակվեց. նա հանձնարարեց ագիտատոր Գ. Մուրադյանին գրույց կազմակերպել ՄՏ կայանի բոլոր տրակտորիստների հետ՝ տրակտորների այդ մասերի ճիշտ տեղադրման, նկատված խոտանը վերացնելու միջոցների մասին։ Այդ զրույցը մեծապես օգնեց տրակտորիստներին և նորոգումների ամբողջ ընթացքում այդպիսի խոտան այլևս տեղի չունեցավ։

Ահա մեկ օրինակ ևս։

Դեկտեմբեր ամսին սկսեցին մեքենաների նորոգման գրաֆիկը խախտել և ընդհանուր տեմպից ետ մնալ Խ. Տոնոյանի և Գ. Մովսիսյանի բրիգադները։ ՄՏ կայանի պարտկազմակերպության կոմիտեն, քննության առնելով այդ բրիգադների աշխատանքի հարցը, նշեց, որ նրանք իրենց առաջադրանքները թերակատարում են այն պատճառով, որ այդ բրիգադներում ցածր է աշխատանքային կարգապահությունը, ժամանակին չեն նախապատրաստում անհրաժեշտ մասերն ու գործիքները։ Պարտկազմակերպության կոմիտեն հանձնարարեց ագիտկոլեկտիվին՝ այդ բրիգադներում զրույցներ կազմակերպել աշխատանքային կարգապահության վերաբերյալ, պատմել նրանց առաջավոր բրիգադների աշխատանքի փորձի մասին, օգնել,



որպեսզի նրանք հասնեն առաջավորներին։ Այդ աշխատանքը ագիտկոլեկտիվի կողմից հանձնարարվեց ագիտատոր Վ. Հարությունյանին։ Ագիտատորի շնորհալի և ջանասեր աշխատանքը լավ արդյունքներ տվեց. ետ մնացող այդ բրիգադներում բարձրացավ աշխատանքային կարգապահությունը, բրիգադայի յուրաքանչյուր անդամ իր կոնկրետ առաջադրանքներն ստացավ, խիստ հսկողություն սահմանվեց նորոգումների գրաֆիկը պահպանելու նկատմամբ։ Եվ ահա շատ չանցած Տոնոյանի և Մովսիսյանի բրիգադները նորից սկսեցին քայլել ՄՏ կայանի ամբողջ կոլեկտիվի հետ։

Շնորհիվ աշխատանքի լավագույն կազմակերպման, սոցիալիստական մրցության լայն ծավալման ՄՏ կայանի առաջավոր բրիգադներից մեկը՝ Կ. Ղումաշյանի բրիգադան դեռ դեկտեմբերի 15-ին, բարձր որակով ավարտեց իրեն հանձնված տրակտորների և գյուղգործիքների վերանորոգումը։ Պարտիական կոմիտեի հանձնարարությամբ այդ բրիգադայի ագիտատոր Ս. Մարտիրոսյանը և բրիգադիր Կ. Ղումաշյանը զրույցներ կազմակերպեցին մյուս բրիգադներում և մանրամասն պատմեցին իրենց աշխատանքների, ձեռք բերած հաջողությունների մասին։

Պարտկազմակերպության այս միջոցառումը աշխատանքի նոր լիցք տվեց մյուս բրիգադաներին։

ՄՏ կայանում ագիտացիոն - մասսայական աշխատանք տանելու գործում պարտկազմակերպությունը լայնորեն ներգրավել է նաև տեղի ակտիվին։ Բազմապիսի թեմաների շուրջ ՄՏ կայանի աշխատողների հետ սիստեմատիկաբար զրույցներ են անցկացնում ՄՏ կայանի դիրեկտոր Գ. Սուքիասյանը, դիրեկտորի քաղգծով տեղակալ Մ. Գրիգորյանը, ավագ գյուղատնտես Վ. Հարությունյանը, ԼԿԵՄ կազմակերպության կոմիտեի քարտուղար Ջ. Պետրոսյանը, պրոֆկոմի նախագահ Հ. Ղազարյանը և ուրիշներ։

Հոկտեմբերյանի ՄՏ կայանում ագիտացիոն-մասսայական աշխատանքները տարվում են բազմապիսի ձևերով։ Այստեղ լայնորեն օգտագործվում է և՛ պատի թերթը, և՛ ցուցադրական ագիտացիան, և՛ առաջավոր մեխանիզատորների ելույթները, և՛ թերթերի ընթերցանությունն ու այլ միջոցներ։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքների լավ կազմակերպումը մեծապես օգնեց ՄՏ կայանի տրակտորների և գյուղատնտեսական այլ մեքենաների ու գործիքների աշնան-ձմեռային վերանորոգումը ժամկետից շուտ ավար-



տելուն, առաջիկա բոլշևիկյան գարնանացանին կազմ ու պատրաստ դիմավորելուն։ ՄՏ կայանի աշխատողների կոլեկտիվը պատվով կատարեց իր վերցրած պարտավորությունը։ Կոլեկտիվը ժամկետից մեկ ամիս շուտ, 1949 թվի հունվարի մեկին ավարտեց մեքենաների աշնան-ձմեռային նորոգումը։

Ա. ԴԱՂԲԱՇՅԱՆ

# ԹԵՄԱ-ՊԼԱՆ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ 1947 Թ. ՓԵՏՐՎԱՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ «ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ»

*1. ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը հանդիսանում է հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության ամենաարագ վերականգնման և վերելքի մարտական ծրագիրը։ Խաղաղ շինարարության անցնելուց հետո առաջնակարգ նշանակություն ունի գյուղատնտեսության ամենաարագ վերականգնման և վերելքի գործը որպես ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության հաջող զարգացման և ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարելավման անհրաժեշտ պայման։*

*2. Գյուղատնտեսության ամենաարագ վերականգնումը և վերելքն ապահովում է ամենակարճ ժամկետում ստեղծել պարենի առատություն՝ մեր բնակչության համար, հումքի՝ թեթև արդյունաբերության համար և*



*պետական անհրաժեշտ պարենային ու հումքային ռեզերվների կուտակում։*

*3. Կոլխոզային շինարարության մեջ գլխավոր խնդիրն է՝ գյուղատնտեսական արտելի հետագա կազմակերպական-տնտեսական ամրապնդումը, կոլխոզների հանրային սեփականության բազմապատկումը։ Պահպանել և ավելացնել հանրային միջոցները՝ լծկան ու մթերատու անասունները, սերմացուն, կերը և ապահովագրական ֆոնդերը, գյուղատնտեսական ինվենտարը, անհրաժեշտ է զարգացնել գյուղատնտեսական արտադրության օժանդակ ճյուղերը, կառուցել գյուղատնտեսական շենքեր և ավելացնել արտելի անբաժանելի ֆոնդերը։*

*4. Աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման գործում, բերքատվության և անասնապահության մթերատվության աճման գործում կարևորագույն ձեռնարկում է կոլխոզներում արտադրական նոր նորմաների և աշխօրերով աշխատանքի միասնական նոր գնահատումների կիրառումը, որը ապահովում է ավելի բարձր վարձատրություն կարևորագույն աշխատանքներում և համապատասխանորեն բարձր վարձատրություն ավելի բարձր բերք ստացած բրիգադաների ու օղակների կոլխոզնիկներին։*

5. Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը «յուրաքանչյուրից ըստ իր ընդունակությունների և վարձատրություն՝ յուրաքանչյուրին ըստ իր աշխատանքի» պայքար է դափողների ու ծրիակերների դեմ։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Ի. Վ. Ստալինի ճառը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թ. փետրվարի 9-ին։

2. ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին»։

3. ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարում ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու զեկուցումը և համագումարի որոշումները։

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Մ. ՊՈԶՆԵՐ.— «Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքի մասին», Հայկական ՍՍՌ Հեռակա Մանկավարժական ինստիտուտի հրատարակություն, 1948 թ., տիրաժ՝ 1500, 46 էջ, գինը՝ 2 ռ.։

Լ. Ա. ԼԵՈՆՏԵՎ.— «Սոցիալիզմի քաղաքատնտեսությունը Լենինի և Ստալինի աշխատություններում», Հայկական ՍՍՌ Պետական Հեռակա Մանկավարժական ինստիտուտի հրատարակություն, 1948 թ., տիրաժ 1500, 56 էջ գինը՝ 2 ռ.։

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ՎՖ 00459 Պատվեր № 168 Տիրաժ 8.500
Պոլիգրաֆ. և հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 3 1949 г.

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“-Ի 1949 թվի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունը ընդունվում է Սոյուզպեչատի և Փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկություններում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլխոզներում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**Տարեկան 24 համարը — 12 ռուբլի**
**6 ամիսը 12 „ — 6 „**
**3 ամիսը 6 „ — 3 „**
**Մեկ համարը — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**